Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք:

ՀԿՊ Կենտկոմի
պրոպագանդայի և
ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

ՍԵՊՏԵՄԲԵՐ 18 1961






## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԳ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։

**Содержание**








Адрес редакции—Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 60, тел. 2-52-78.






# ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՍԻՍՏԵՄԸ ԱԶԱՏ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՄԵԾ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅՈՒՆ Է

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի մեջ մտնող պետությունները դարձել են մարդկային հասարակության զարգացման վրա հզոր չափով ներգործող ինտերնացիոնալ մեծ ուժ։ Նրանց անցած ուղին, նրանց պատմական նշանակությունը և հեռանկարները խորապես բացահայտված ու ընդհանրացված են Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագրի նախագծում՝ մեր դարաշրջանի նշանավոր փաստաթղթում։ Նրանում տրված է սոցիալիստական սիստեմը ծնող պատճառների գիտական վերլուծությունը, քննարկված են այդ սիստեմի զարգացման օրինաչափությունները։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը ծագել և ամրապնդվել է Հոկտեմբերյան ռևոլյուցիայի կենսատու արևի ներքո, ռևոլ-

յուցիա, որը դրեց կապիտալիզմից դեպի սոցիալիզմ մարդկության համաշխարհային-պատմական շրջադարձի սկիզբը։ Սովետական ժողովրդի կատարած մեծագույն ռևոլյուցիոն սխրագործությունն ալեկոծեց և ոգեշնչեց բոլոր երկրների ու մայր ցամաքների ժողովրդական մասսաներին։ Երկրորդ համաշխարհային պատերազմում գերմանական և ճապոնական միլիտարիզմի ջախջախումը, Սովետական Միության վճռական դերի շնորհիվ, նպաստավոր պայմաններ ստեղծեց Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրների ժողովուրդների կողմից տապալելու կապիտալիստների ու կալվածատերերի իշխանությունը։

Այդ երկրներում տեղի ունեցած սոցիալիստական ռևոլյուցիաները, որոնք 1917 թվականի Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո ամենախոշոր իրադարձություններն էին համաշխարհային պատմության մեջ, նոր հզոր հարված հասցրին իմպերիալիզմին, հանգեցրին համաշխարհային սոցիալիստական սիստեմի ստեղծմանը։ Այդ սիստեմի ստեղծումն ու զարգացումը կապված է այնպիսի օրենքների հետ, որոնք ուղղակի հակադիր են կապիտալիզմի համաշխարհային սիստեմի կազմակերպմանը և զարգացմանը հանգեցրած օրենքներին։ Համաշխարհային սոցիալիստական սիստեմի ըստեղծման և զարգացման պրոցեսը տեղի է ունենում պետությունների սուվերենության, լիակատար կամավորության և փոխադարձ օգնության հիման վրա։ Նա համապատասխանում է ամբողջ սոցիալիստական լագերի աշխատավորների արմատական կենսական շահերին։ Հակառակ դրան, կապիտալիզմի համաշխարհային սիստեմը հիմնվել և զարգացել է կապիտալիստական պետությունների միջև տեղի ունեցած կատաղի պայքարում, թույլ երկրները ուժեղ երկրներին ենթարկելու և շահագործելու ճանապարհով, հարյուր միլիոնավոր մարդկանց ստրկացնելու և ամբողջ մայր ցամաքներ իմպերիալիստական մետրոպոլիաների գաղութային կցորդ դարձնելու ճանապարհով։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմն իրենից ներկայացնում է ազատ, սուվերեն ժողովուրդների սոցիալական, տնտեսական և քաղաքական համագործակցություն, ժողովուրդներ, որոնք շահերի և նպատակների միասնությամբ, միջազգային սոցիալիստական համերաշխության սերտ կապերով համախմբված ընթանում են սոցիալիզմի և կոմունիզմի ուղիով։ «Երկրագնդի այն

մասում,— ընդգծում է ընկ. Ն. Ս. Խրուշչովը,— որը վերաղեցնում է համաշխարհային սոցիալիստական սիստեմը, ստեղծվում է ամբողջ մարդկության նոր հասարակարգի նախատիպը»։

Այս սիստեմը երկրների միջև տնտեսական հարաբերությունների նոր տիպ է։ Նրանց հատուկ սոցիալ-տնտեսական և քաղաքական ընդհանրությունը օբյեկտիվ հիմք է ստեղծում միջպետական կայուն և բարեկամական հարաբերությունների համար, լիակատար իրավահավասարության, անկախության և սուվերենության հարգման, սոցիալիստական լագերի բոլոր պետությունների եղբայրական փոխօգնության համար։ Սոցիալիստական սիստեմի մեջ մտնող երկրները հենվում են հասարակական զարգացման մի շարք գլխավոր օրինաչափությունների վրա, ունեն մի ընդհանուր վեհ նպատակ՝ կոմունիզմը, ընդհանուր շահեր, միատիպ հասարակական ուժեր, իրենց զարգացման միատիպ քաղաքական, տնտեսական և գաղափարական հիմքեր։

Այն ժամանակ, երբ կապիտալիստական սիստեմի քաղաքական հիմքը բուրժուազիայի դիկտատուրան է, շահագործող փոքրամասնության իշխանությունը՝ շահագործ-



վող մեծամասնության վրա, սոցիալիստական համագործակցության երկրների քաղաքական հիմքը պրոլետարիատի դիկտատուրան է, ժողովրդի իշխանությունը՝ բանվոր դասակարգի գլխավորությամբ։ Սոցիալիստական ռևոլյուցիաների ծնած պրոլետարիատի դիկտատուրան համաշխարհային-պատմական դեր խաղաց՝ ապահովեց սոցիալիզմի հաղթանակը ՍՍՌՄ-ում, հանգեցրեց նոր հասարակարգի հաղթանակի Ալբանիայում, Բուլղարիայում, Հունգարիայում, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում, Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայում, Չինաստանում, Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկայում, Մոնղոլիայում, Լեհաստանում, Ռումինիայում, Չեխոսլովակիայում։ Սոցիալիզմի ճանապարհի վրա կանգնեց նաև Հարավսլավիան։ Սակայն հարավսլավական ղեկավարներն իրենց ռևիզիոնիստական քաղաքականությամբ երկիրը հակադրեցին սոցիալիստական լագերին ու միջազգային կոմունիստական շարժմանը և հարավսլավական ժողովրդի ռևոլյուցիոն նվաճումների կորստյան սպառնալիք ստեղծեցին։

Սոցիալիստական երկրները հարյուր մի-

լիոնավոր մարդկանց կյանքի վերափոխման կոլեկտիվ փորձ են կուտակել, շատ նոր, յուրահատուկ բան են մտցրել հասարակության քաղաքական ու տնտեսական կազմակերպման ձևերի մեջ։ «Բոլոր ազգերը,— նշում է Վ. Ի. Լենինը,— կգան դեպի սոցիալիզմ՝ դա անխուսափելի է, բայց բոլորը կգան ոչ բոլորովին միատեսակ, յուրաքանչյուրը յուրահատկություն կմտցնի դեմոկրատիայի այս կամ այն ձևի մեջ, պրոլետարիատի դիկտատուրայի այս կամ այն տարատեսակության մեջ...»։

Պրոլետարիատի դիկտատուրայի ձևերից մեկն էլ ժողովրդական դեմոկրատիան է, որի մեջ իրենց արտացոլումն են գտել երկրների պատմական և ազգային առանձնահատկությունները։ Դա արտացոլել է սոցիալիստական ռևոլյուցիայի զարգացման յուրահատկությունը՝ իմպերիալիզմի թուլացման և սոցիալիզմի օգտին ուժերի հարաբերակցության փոփոխման պայմաններում։ Սոցիալիզմի երկրներում հաստատված պետական կարգի ձևը նրան թույլ է տալիս հաջող կերպով ամրապնդելու համաշխարհային սոցիալիստական սիստեմը, զարգացնելու եղբայրական հարաբերությունները լիակատար իրավահավասարու-



թյան և կամավոր համագործակցության հիման վրա, իրագործելու ուժերի քաղաքական համակենտրոնացում՝ համատեղ կերպով պայքարելու հանուն ընդհանուր խաղաղության, հանուն կոմունիզմի լիակատար հաղթանակի։

Սոցիալիստական սիստեմը դարձել է մարդկության բոլոր խաղաղասեր ուժերի ձգողության կենտրոնը։ Սոցիալիստական պետությունների արտաքին քաղաքականությունը հիմնված է խաղաղ գոյակցության սկզբունքի վրա, որը սոցիալիզմի և կապիտալիզմի՝ միջազգային մասշտաբով խաղաղ մրցության հիմք է ծառայում, հանդիսանում է նրանց միջև տեղի ունեցող դասակարգային պայքարի հատուկ ձև։

Կապիտալիստական սիստեմի տնտեսական հիմքը արտադրամիջոցների մասնավոր սեփականությունն է։ Մինչդեռ սոցիալիստական սիստեմի տնտեսական հիմքը հանդիսանում է արտադրամիջոցների հանրային սեփականությունը։ «Եթե համաշխարհային կապիտալիզմի էկոնոմիկան,— ասված է Ծրագրի նախագծում,— զարգանում է դանդաղ տեմպերով, ունենում է ճգնաժամեր ու ցնցումներ, ապա համաշխարհային սոցիալիզմի էկոնոմիկան բնութագրվում

է աճի արագ և հաստատուն տեմպերով, բոլոր սոցիալիստական երկրների ընդհանուր անընդհատ տնտեսական վերելքով»։

Սոցիալիզմը մերձեցնում է ժողովուրդներին և երկրները։ Այդ պատճառով միանգամայն բնական է, որ նրանց լայն համագործակցության պրոցեսում անընդհատ ամրապնդվում է սոցիալիզմի տնտեսական բազան։ Սոցիալիստական հասարակարգը պայմաններ է ստեղծում կապիտալիզմի կողմից երկրներին ժառանգություն մնացած տնտեսական և կուլտուրական անհավասարությունը լիկվիդացնելու համար, կապիտալիզմի օրոք ետ մնացած պետությունների էկոնոմիկայի արագ զարգացման համար, սոցիալիստական լագերի բոլոր երկրների զարգացման ընդհանուր մակարդակը հավասարեցնելու համար։ Ինչպես նշվում է ՍՄԿՊ Ծրագրի նախագծում, առանձին երկրներում սոցիալիստական ռևոլյուցիաների տարբեր ժամանակ տեղի ունենալը և տնտեսական ու կուլտուրական զարգացման ոչ միանման մակարդակը պայմանավորում են այդ երկրների կողմից սոցիալիզմի կառուցումը տարբեր ժամանակ ավարտելը և կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը թևա-



կոխելը։ Սակայն սոցիալիստական պետությունների զարգացումը սոցիալիզմի միասնական համաշխարհային սիստեմի կազմում, այդ սիստեմի օրինաչափությունների և առավելությունների օգտագործումը, նրանց համար հնարավորություն են ստեղծում կրճատելու սոցիալիզմի կառուցման ժամկետները, հեռանկար են բացում ավելի կամ նվազ չափով միաժամանակ, պատմական մի էպոխայի սահմաններում, անցնելու կոմունիզմին։

ՍՄԿՊ Ծրագրի նախագծում ընդգծվում է սոցիալիստական յուրաքանչյուր երկրի հաջողությունների փոխկախվածությունը այդ ամբողջ սիստեմի հաջողություններից։ Սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման շահերը սոցիալիստական յուրաքանչյուր երկրից պահանջում է իր ազգային տնտեսության ամրապնդումն ու զարգացումը զուգակցել սոցիալիստական համագործակցության բոլոր երկրների էկոնոմիկայի ամրապնդման ու զարգացման հետ։ Սոցիալիստական երկրների էկոնոմիկայի ընդհանուր մակարդակի վերելքն ու հավասարեցումը ձեռք է բերվում ամենից առաջ այն ճանապարհով, որ յուրաքանչյուր երկիր լիովին օգտագործում է իր ներքին ռեսուրս-

ները, բարելավում է ժողովրդական տնտեսության ղեկավարման ձևերն ու մեթոդները, հետևողականորեն կիրառում է սոցիալիստական տնտեսավարման լենինյան սկզբունքներն ու մեթոդները։

Կոմունիզմի ուղղությամբ համաշխարհային սոցիալիստական սիստեմի առաջընթացը հեշտացնում և արագացնում է մեր երկիրը, որը առաջինն է գնում դեպի կոմունիզմ։ Սովետական ժողովրդին բաժին է ընկել նախաձեռնողի, պիոների պատմական դեր՝ գցելու հասարակական զարգացման նոր, չփորձված ուղին, սեփական փորձով ստուգելու այդ ուղու ճշտությունը, երևան բերելու և հաղթահարելու ծագող դժվարությունները, ընտրելու կոմունիստական շինարարության լավագույն ձևերն ու մեթոդները։

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի երկրների զարգացման պրոցեսում է՛լ ավելի են ընդարձակվում նրանց համագործակցությունը և փոխօգնությունը՝ գործունեության բոլոր ոլորտներում։ Սովետական Միության օգնությամբ, օրինակ, եղբայրական սոցիալիստական երկրներում կառուցվել է մոտ 500 արդյունաբերական ձեռնարկություն և օբյեկտ։ Սովետական



Միության կողմից այդ երկրներին տրամադրված փոխառություններն ու վարկերը կազմում են 7,8 միլիարդ ռուբլի (նոր վալյուտային ռուբլիներով)։ Միևնույն ժամանակ սոցիալիզմի եղբայրական երկրներն էլ են նպաստում սովետական էկոնոմիկայի զարգացմանը։

Սոցիալիստական երկրների համագործակցությունը նրանցից յուրաքանչյուրին հնարավորություն է տալիս առավել չափով ռացիոնալ և լրիվ օգտագործելու իր ռեսուրսները, զարգացնելու արտադրողական ուժերը։ Սոցիալիստական հասարակության արտադրողական ուժերի զարգացման օբյեկտիվ օրինաչափությունները պայմանավորում են ազգային տնտեսությունների ավելի մեծ չափով մերձեցումը։ Ինչպես կանխատեսում էր Վ. Ի. Լենինը, զարգանում են ապագայում համաշխարհային կոմունիստական տնտեսություն ստեղծելու տենդենցները, տնտեսություն, որը պետք է կարգավորվի միասնական պլանով։

Սոցիալիստական պետությունների եղբայրական ընտանիքում դասակարգային հակամարտությունների վերացման հետ մեկտեղ վերանում են նաև ազգերի հակամարտությունները։

Այն ժամանակ, երբ կապիտալիստական սիստեմի հոգեզավակը բուրժուական նացիոնալիզմն է, սոցիալիզմի երկրների գաղափարական հիմքը մարքսիզմ-լենինիզմն է, պրոլետարական ինտերնացիոնալիզմը։

Կոմունիստներն իրենց առաջնահերթ պարտականությունն են համարում աշխատավորներին դաստիարակել ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության ոգով, նացիոնալիզմի և շովինիզմի յուրաքանչյուր դրսևորման նկատմամբ անհաշտության ոգով։ Նացիոնալիզմն այն հիմնական քաղաքական և գաղափարական զենքն է, որը միջազգային ռեակցիան ու ներքին ռեակցիոն ուժերի մնացորդներն օգտագործում են սոցիալիստական երկրների միասնության դեմ։ Նացիոնալիզմը վնաս է հասցնում սոցիալիստական համագործակցության ընդհանուր շահերին և ամենից առաջ այն երկրի ժողովրդին, որտեղ նա երևան է գալիս։ Կոմունիստները, հանդես գալով նացիոնալիզմի և ազգային էգոիզմի դեմ, դրա հետ միասին ամենաուշադիր կերպով են վերաբերվում մասսաների ազգային զգացմունքներին։

Կոմունիստական պարտիաները, որոնք հավատարիմ են ինտերնացիոնալիզմին,



միշտ հետևում են «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» մարտական կոչին։ Նրանք սոցիալիզմի և կոմունիզմի կառուցումը համարում են իրենց ինտերնացիոնալիստական վեհ խնդիրը, որը համապատասխանում է ամբողջ համաշխարհային սոցիալիստական սիստեմի շահերին, միջազգային պրոլետարիատի, ամբողջ մարդկության շահերին, կապիտալիզմից անջատվող երկրների ամենասերտ դաշինքի և ջանքերի միավորման կենսական անհրաժեշտությունը տեսնում են սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման մեջ։ Սոցիալիստական երկրների համաշխարհային համագործակցությունից մեկուսացած, առանձնացած սոցիալիզմ կառուցելու կուրսը թեորիական տեսակետից սնանկ է, տնտեսական տեսակետից՝ վնասակար, քաղաքական տեսակետից՝ ռեակցիոն և վտանգավոր։ Վերջին հաշվով դա կարող է հանգեցնել սոցիալիստական նվաճումների կորստյան։

Ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության գաղափարները գնալով ավելի մեծ դեր են խաղում համաշխարհային սոցիալիստական սիստեմի ամրապնդման գործում։ Նրանք արտահայտվում են եղբայրական ժողովուրդների փոխօգնու-

թյան, նրանց կատարած գիտահետազոտական նվաճումների փոխանակման, արդյունաբերական օբյեկտների համատեղ կառուցման, ժողովրդատնտեսական պլանների կոորդինացման, արտադրության մասնագիտացման ու կոոպերացման, աշխատանքի միջազգային բաժանման նոր տիպի ձևավորման և հազարավոր մեծ ու փոքր գործերի մեջ։ Այդ գաղափարները վառ արտահայտություն են գտնում եվրոպական սոցիալիստական պետությունների՝ Տնտեսական փոխօգնության խորհրդի մասնակիցների ջանքերի միավորման մեջ։ Ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության գաղափարները մարմնավորված են նաև Վարշավայի Պայմանագրի մասնակից երկրների գործունեության մեջ, որն ուղղված է սոցիալիստական լագերի պաշտպանունակության ամրապնդման նպատակին։

Պատմական փորձը ցույց է տալիս, որ սոցիալիստական պետությունները, հետևողականորեն պաշտպանում են բոլոր ժողովուրդների ինքնուրույն, անկախ ու սուվերեն զարգացման իրավունքները, այն ժամանակ, երբ իմպերիալիստական տերությունները կատաղի ջանքեր են լարում, որ-





պեսզի որևէ ձևով պահպանեն ամբողջովին նեխված գաղութային սիստեմը և շարունակեն ճնշել ու կողոպտել թույլ զարգացած երկրները։ Բայց այդ ջանքերը ձախողման են դատապարտված։ Կապիտալիզմն անզոր է կանգնեցնելու անհաղթահարելի ազատագրական պրոցեսը։ Սոցիալիզմի աշխարհը լայնանում է, իսկ կապիտալիզմի աշխարհը նեղանում։

Մարդկության մեկ երրորդը, որ միավորված է սոցիալիստական լագերում, նոր կյանք է կառուցում գիտական կոմունիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո։ Ամբողջ մարդկության երջանիկ ապագայի նկատմամբ խոր հավատով են ներթափանցված Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագրի նախագծի հետևյալ խոսքերը՝ «դեպի սոցիալիզմ տանող գլխավոր ճանապարհը հարթված է։ Այդ ճանապարհով արդեն գնում են շատ ժողովուրդներ, այդ ճանապարհով վաղ թե ուշ կգնան բոլոր ժողովուրդները»։

Գ. ԿԱՊԻՐԻՆ
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

## ՋՐՈՒՅՑ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԳԻՏԱԿՑԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՄԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ ՊԱՐՏԻԱՅԻ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Կոմունիստական պարտիայի նոր Ծրագրի նախագծում նշված են կոմունիստական հասարակարգի մարդու ձևավորման ուղիները և միջոցները: «Նոր մարդու ձևավորումը,— ասված է ՍՄԿՊ Ծրագրի նախագծում,— տեղի է ունենում կոմունիզմի կառուցմանը ակտիվորեն մասնակցելու, տնտեսական և հասարակական կյանքում կոմունիստական սկզբունքները զարգացնելու պրոցեսում, պարտիայի, պետության և հասարակական կազմակերպությունների դաստիարակչական աշխատանքի ամբողջ սիստեմի ներգործությամբ, սիստեմ, որի մեջ կարևոր դեր է պատկանում մամուլին, ռադիոյին, կինոյին և հեռուստատեսությանը»:

Սոցիալիզմը խոշոր հաջողությունների հասավ մասսաների սոցիալիստական դաստիարակության գործում: Բայց սոցիալիստական



հասարակարգի կառուցումից հետո էլ մարդկանց գիտակցության մեջ և վարքագծում պահպանվում են մասնավոր սեփականատիրական մնացուկները, որոնք արգելակում են հասարակության առաջընթաց շարժումը:

Կոմունիստական գիտակցականության դաստիարակման բնագավառի գլխավոր խընդիրները պարտիան համարում է հասարակության բոլոր անդամների գիտական աշխարհայացքի ձևավորումը, աշխատանքային դաստիարակությունը, կոմունիստական բարոյականության հաստատումը, պրոլետարական ինտերնացիոնալիզմի և սոցիալիստական հայրենասիրության զարգացումը, մարդկային անհատի բազմակողմանի և ներդաշնակ զարգացումը, կապիտալիզմի մնացուկների հաղթահարումը մարդկանց գիտակցության մեջ և վարքագծում, բուրժուական գաղափարախոսության մերկացումը: Սոցիալիզմի և կոմունիստական հասարակարգի կառուցման պայմաններում առաջնակարգ նշանակություն է ստանում գիտական աշխարհայացքի ձևավորումը հասարակության բոլոր անդամների մեջ, որի գաղափարական հիմքը մարքսիզմ-լենինիզմն է: Կոմունիստական ապագայի մարդը իր մեջ ներդաշնակորեն պետք է զուգակցի հոգևոր հարստու-

թյուն, բարոյական մաքրություն և ֆիզիկական կատարելություն։

Կոմունիստական պարտիայի խնդիրն է ամբողջ բնակչությանը դաստիարակել գիտական կոմունիզմի ոգով, ձգտելով, որ աշխատավորները տիրապետեն մարքս-լենինյան ուսմունքի գաղափարներին, խորապես ըմբռնեն համաշխարհային զարգացման ընթացքն ու հեռանկարները, ճիշտ հասկանան երկրի ներքին և միջազգային ասպարեզի իրադարձությունները, գիտակցաբար կառուցեն կյանքը կոմունիստական ձևով։

Դեպի կոմունիզմ շարժվելու հաջող առաջընթացի անհրաժեշտ պայմանը մարքս-լենինյան տեսությունն է, որը լուսավորում է պրակտիկայի ուղին, օգնում է այն դժվարությունները և հակասությունները բացահայտելուն և հաղթահարելուն, որոնք խանգարում են կոմունիստական հաջող շինարարությանը։

Պարտիայի կարևորագույն պարտականությունն է՝ մշտապես զարգացնել մարքս-լենինյան տեսությունը և այն ստեղծագործորեն զուգակցել կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ։

Դաստիարակչական աշխատանքի կարևորագույն խնդիրներից մեկը պարտիան հա-



մարում է աշխատանքային դաստիարակությունը։ Հասարակության բարօրության համար կատարվող աշխատանքը յուրաքանչյուր սովետական քաղաքացու սրբազան պարտականությունն է։ Մեզանում ինչպես ֆիզիկական, այնպես էլ մտավոր ամեն մի հանրօգուտ աշխատանք հարգելի ու պատվավոր է։

Պարտիան խնդիր է դնում բոլոր աշխատավորներին դաստիարակել աշխատանքի լավագույն օրինակներով։

Աշխատանքը մարդկանց ապրելու ու զարգանալու միջոցն է։ Այն մարդը, որը հասարակությունից բարիք ստանալով, չի մասնակցում այդ բարիքի ստեղծմանը, ձրիակեր է և ուրիշի հաշվին ապրող։

Սովետական մարդիկ քաջ գիտակցում են, որ կոմունիզմ կառուցել, այդ նշանակում է աշխատել ավելի լավ, առավել արտադրողաբար։

Կոմունիզմը փոխելով աշխատանքի բնույթը՝ մարդկանց չի ազատում աշխատանքից։ «Կոմունիստական հասարակությունը... բնավ չի լինի անարխիայի, անգործության և դատարկապորտության հասարակարգ։ Ամեն ոք կմասնակցի հասարակական աշխատանքին և կապահովի հասարակության նյութական և

հոգևոր հարստությունների անընդհատ աճը»,— ասված է ՍՄԿՊ Ծրագրի նախագծում։

Սովետական մարդիկ, ոգևորվելով ՍՄԿՊ Ծրագրի նախագծով, նրա մեջ տեսնելով իրենց կյանքի նպատակը, ավելի լայնորեն են ծավալում սոցիալիստական մրցությունը հանուն նորանոր նվաճումների արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի բնագավառներում։

Աշխատանքի հանդեպ կոմունիստական վերաբերմունքի, հասարակական պարտքի բարձր գիտակցականության և ընդհանուր գործին ջերմորեն նվիրված լինելու օրինակներ է տալիս մեր ռեսպուբլիկայի աշխատանքային առօրյան։

Մեր ռեսպուբլիկայի յուրաքանչյուր գործարանում, ամեն մի կոլտնտեսությունում ու սովխոզում հերոսաբար աշխատում են շատ նորարարներ, որոնք օրինակ են հանդիսանում մյուսների համար։ Դրանցից են Երևանի Ալյումինի գործարանի բանվոր Ն. Հակոբյանը, Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատի ավագ ձուլող բանվոր, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Ա. Ղազարյանը, Լենինականի դեպոյի նշանավոր մեքենավար Ս. Մատնիշյանը և շատ շատերը։ Ներկայումս ռեսպուբլիկայում կան կոմունիստական աշ-



խատանքի հարյուրավոր հարվածային բրիգադաներ և ցեխեր, կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների բարձր կոչման են արժանացել ամբողջ ձեռնարկություններ։

Դրանք մեր օրերի այն առաջավոր մարդիկն են, որոնք քաջ գիտակցում են իրենց պարտքը սովետական հասարակարգի առջև, մեծ սեր են տածում դեպի աշխատանքը, ունեն բարձր կուլտուրա և օժտված են կոմունիստական բարոյականության մյուս բարձր հատկանիշներով։

Դեպի կոմունիզմ շարժվելու պրոցեսում հետզհետե աճում է բարոյական սկզբունքների դերը հասարակության կյանքում։

Կոմունիստական պարտիան հին աշխարհի այլասերված բարոյականությանը հակադրում է կոմունիստական բարոյականությունը, որն արտահայտում է ամբողջ աշխատավոր մարդկության շահերն ու իդեալները։

«Կոմունիստական բարոյականությունը,— ասված է ՍՄԿՊ Ծրագրի նախագծում,— ներառնում է համամարդկային այն հիմնական բարոյական նորմերը, որ ժողովրդական մասսաները մշակել են հազարամյակների ընթացքում սոցիալական ճնշման ու բարոյական արատների դեմ մղած պայքարում»։

Մեր պայմաններում դեռևս կան մարդիկ,

որոնք իրենց մասնավոր շահերը բարձր են դասում ամեն ինչից։ Նման երևույթ երևան է գալիս մասնավոր սեփականատիրական ձգտումներում, շահամոլության, մարդկանց նկատմամբ անհոգի վերաբերմունքի մեջ, եսասիրության, մանր բուրժուական ինդիվիդուալիզմի, նացիոնալիզմի և շատ այլ արատներում, որոնք սերմանվել են շահագործողական դասակարգերի կողմից հարյուրամյակների ընթացքում։

Առանձին հետամնաց քաղաքացիներ չեն մտահոգվում աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ, ձգտում են պակաս աշխատանքի դիմաց պետությունից ավելի շատ եկամուտ ստանալ։ Որոշ կոլտնտեսականներ ի վնաս հանրայինի, ձգտում են ավելացնել իրենց անձնական տնամերձերը՝ առևտրական-շահադիտական նպատակներով։

Պարտիան խնդիր է դնում անողոք պայքար մղել նման մարդկանց դեմ։

Դեռևս կան հիմնարկությունների և ձեռնարկությունների առանձին ղեկավար աշխատողներ, որոնք չեն հոգում կամ վատ են հոգում բանվորների և ծառայողների անձնական կենցաղային կարիքների մասին, ճիշտ չեն ընտրում և տեղաբաշխում կադրե-



րը, չեն հոգում նրանց աճի, որակավորման մասին և այլն։

Առանց նման մարդկանց վերադաստիարակման և նման թերությունների վերացման՝ ապագայի կոմունիստական գիտակցությամբ օժտված մարդու ձևավորումն անհնարին է։

Մեծ է գրողների և արվեստագետների գործունեության նշանակությունը կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում, երբ աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը, նոր մարդու ձևավորումը դարձել է պարտիայի ամենակենսական խնդիրներից մեկը, իսկ գրականությունն ու արվեստը մարդկանց վրա ազնիվ ներգործության մեծագույն ուժ են ստացել։

Պարտիայի նոր Ծրագրի նախագծում հետևյալ կերպ է բնութագրված սովետական գրականության և արվեստի դաստիարակչական դերը. «Լավատեսությամբ և կոմունիստական կենսահաստատ գաղափարներով տոգորված սովետական գրականությունը և արվեստը խաղում են գաղափարական-դաստիարակչական մեծ դեր, սովետական մարդու մեջ զարգացնում են նոր աշխարհի կառուցողի հատկություններ»։

Սովետական գրականությունը և արվեստը կոչված են օգնել պարտիային՝ բոլոր աշխա-

տավորներին դաստիարակելու բարձր գաղափարայնության և կոմունիզմի նկատմամբ հավատարմության, աշխատանքի ու հանրային տնտեսության նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի, սովետական հայրենասիրության, ժողովուրդների բարեկամության ու ինտերնացիոնալիզմի ոգով։

Հերոս սովետական ժողովուրդը չտեսնված սխրանքներ է կատարում հարազատ պարտիայի XXII համագումարը արժանավայել դիմավորելու համար։ Այդ սխրագործ մարդկանց առաջին շարքերում են Հերոս-Տիեզերագնացներ՝ Յուրի Գագարինը և Գերման Տիտովը, որոնք իրենց աննախադեպ թռիչքներով ողջ աշխարհին ապացուցեցին կոմունիզմի վեհ գաղափարների կենսունակությունը։

ՎԱՆ. ԴԱՋԱՆՋՅԱՆ

—•—



## ԻՆՉՊԵՍ ԱՆՑԿԱՑՐԻ ԶՐՈՒՅՑ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ԻՆՔՆԱՐԺԵՔԻ ԻՋԵՑՄԱՆ ՄԱՍԻՆ

Արտադրանքի ինքնարժեքի իջեցումը հանդիսանում է ձեռնարկության կարևոր ցուցանիշներից մեկը։ Որքան ցածր լինի արտադրանքի ինքնարժեքը, այնքան եկամտաբեր կդառնա տվյալ ձեռնարկությունը, և որ կարևոր է, խթան կհանդիսանա իջեցնելու արտադրանքի մանրածախ գները։ Իսկ դա կնպաստի աշխատավորների նյութական բարեկեցության բարելավմանը։

Կարևոր նշանակություն տալով արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը, վերջերս ունկնդիրների հետ ունեցած զրույցներից մեկը նվիրեցի այդ հարցին։

Մինչև զրույցի օրը հանգամանորեն ուսումնասիրեցի արտադրանքի ինքնարժեքի իջեցման ուղիները։ Անհրաժեշտ տեղեկություններ ձեռք բերեցի մեքենաների կարողությունն ու նրանց լրիվ ծանրաբեռնվածությունը, հումքի, վառելիքի, էլեկտրաէներ-

գիայի, ինչպես նաև բանվորական ուժի ռացիոնալ օգտագործման մասին։ Բացի դրանից, հաշվի առնելով այն հանգամանքը, որ ինքնարժեքի վրա ազդում են նաև պատրաստի արտադրանքի ռեալիզացիայի հետ կապված ծախսերը, հետաքրքրվեցի նաև այդ հարցով։ Երբ բոլոր հարցերը ուսումնասիրված էին, կազմեցի փոքրիկ պլան-կոնսպեկտ։ Ահա այդ կոնսպեկտը.

1. Արդյունաբերության զարգացումը ՍՄԿՊ նոր Ծրագրի նախագծում։ 2. Ինքնարժեքի իջեցումը որպես ձեռնարկության եկամտաբերության հիմնական լծակ։ 3. Մեքենաների և սարքավորումների ռացիոնալ օգտագործման նշանակությունը և այդ գործում եղած թերությունները։ 4. Հումքի, վառելիքի և էլեկտրաէներգիայի խնայողաբար օգտագործումը որպես ինքնարժեքի իջեցման կարևոր միջոց։ 5. Արտադրության պրոցեսը, ռացիոնալիզացիան և գյուտարարությունը։ 6. Բանվորական աշխատաժամանակի լիարժեք օգտագործումը։ 7. Պատրաստի արտադրանքի իրացումը։ 8. Ունկնդիրներից ով ինչպես է պայքարում արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու համար։

Խոսելով մեր ցեխի մեքենաների և սարքավորումների ռացիոնալ օգտագործման,



տեխնոլոգիական ռեժիմի պահպանման մասին, բազմաթիվ օրինակներ բերեցի ցեխում այդ ուղղությամբ տարվող աշխատանքների վերաբերյալ։ Անցած 6 ամսում զտման ցեխը ավելի շատ մշակել է 3-րդ և 4-րդ տեսակի հունդ, որի համար պահանջվում է հատուկ տեխնոլոգիական ռեժիմ։ Օրինակ, եթե 1-ին և 2-րդ տեսակի հունդի մշակման դեպքում մամլիչներն ունենում են 110—120 ջերմաստիճան, ապա 3-րդ և 4-րդ տեսակի հունդի մշակումը կպահանջի 105—110 ջերմաստիճան։ Հունդից ստացվում է սև յուղ, ճարպ և շելուխա։ Եթե քուսպի և շելուխայի մեջ յուղայնությունը շատ է, նշանակում է յուղի կորուստ է եղել։ Այն ոչ միայն բարձրացնում է ինքնարժեքը, այլև վնասում է անասուններին, որովհետև որակյալ անասնակերի մեջ պետք է պարունակվի 0,8—1 տոկոսից ոչ ավելի յուղ։ Սակայն մեր արտադրած քուսպի և շելուխայի յուղայնությունը հասնում է ավելի քան 7 տոկոսի, դրանով իսկ յուրաքանչյուր մեկ տոննա խտացրած կերի մեջ ունենում ենք մոտ 70 կիլոգրամ յուղի կորուստ։

— Իսկ ի՞նչ է մտածում գործարանի ղեկավարությունը այդքան յուղի կորուստը

կանխելու համար,— հարցնում է ունկնդիրներից մեկը։

Ես ունկնդիրներին պատմեցի, որ շուտով շահագործման է հանձնվելու էքստրացիոն գործարանը, որտեղ քուսպից կհանվի սև յուղը, և յուղայնությունը 7,85 տոկոսից կիջնի մինչև 0,5 տոկոսի։ Քուսպի մեջ յուղի կորուստների կանխման միջոցով գործարանը հնարավորություն կունենա տնտեսելու մեծ քանակությամբ յուղ։

Խոսելով արտադրանքի ինքնարժեքի իջեցման գործում արտադրական կարողությունների լրիվ բեռնվածության, բանվորական ժամանակի ռացիոնալ օգտագործման նշանակության մասին, բազմաթիվ օրինակներով ցույց տվեցի, թե այդ ուղղությամբ ինչպիսի թերություններ կան գործարանում և ցեխում։ Օրինակ, գործարանում ոչ լրիվ բեռնվածությամբ են աշխատում հունդի միջուկի բովման վեց շանանոց բովիչները։ Միշտ չէ, որ բանվորները հունդի միջուկը լցնում են բոլոր շաները։ Հաճախ է պատահում, որ մեկի փոխարեն աշխատեցնում ենք երկու մեքենա, իսկ դա տալիս է էլեկտրաէներգիայի, գոլորշու ավելորդ ծախսեր, որոնք թանկացնում են արտադրանքի ինքնարժեքը։



Պատահում է նաև այսպիսի դեպք։ Հաճախ բանվորները թողնում են մեքենան առանց խնամքի և հեռանում աշխատանքի վայրից։ Իսկ դա տալիս է իր վնասակար հետևանքները՝ առաջանում է գերծանրաբեռնվածություն և տեղիք տալիս մեքենայի էլեկտրաշարժիչի փչացման։ Այդպես են վարվել, օրինակ, Մ. Գարունյանը և Մ. Ղազարյանը։

Հետաքրքիր զրույց բացվեց էլեկտրաէներգիայի վառելիքի և հումքի ռացիոնալ օգտագործման վերաբերյալ։ Ես նրանց պատմեցի այն մասին, որ անցած 6 ամսում ձեթի գործարանը ունեցել է 18.000 կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի խնայողություն, սակայն լավ աշխատելու դեպքում կարելի է այդ թիվը կրկնապատկել։ Միտքս ավելի պարզ դարձնելու համար օրինակ բերեցի, թե յուրաքանչյուր մեքենայի վրա որքան էլեկտրաէներգիա է ծախսվում։ Ասացի, որ յուրաքանչյուր բովող մեքենա մեկ ժամում ծախսում է 40 կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա և 200 կիլոգրամ գոլորշի։

Այդ թվերը հրապարակելուց հետո ունկնդիրների մեջ աշխուժություն առաջ եկավ։ Նրանք սկսեցին հաշվել, թե յուրաքանչյուր

հերթափոխությունում մեքենան ինչքան էլեկտրաէներգիա և գոլորշի կծախսի։

— Կնշանակի, եթե մեքենան 50 տոկոսով ծանրաբեռնենք, մեկ հերթափոխում կտանք 140 կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի և 700 կիլոգրամ գոլորշու կորուստ,— ասաց ունկնդիր Ս. Հովհաննիսյանը։

Մի՞թե ձեզ հայտնի չէ, ասում եմ նրանց, որ մամլիչներին 6 մթնոլորտ գոլորշի տալու փոխարեն որոշ բանվորներ, անուշադրության հետևանքով, տալիս են 7 մթնոլորտ։ Կամ թեկուզ վերցնենք վակուում ապարատները, որոնց, նախատեսված 3 մթնոլորտի դիմաց, երբեմն տրվում է 4 մթնոլորտ գոլորշու ճնշում, որը պատճառ է դառնում ոչ միայն ավելորդ գոլորշու կորստի, այլև այդ խախտումը երկար կրկնվելու դեպքում փչանում են ապարատները։ Այդ մասին խոսելու ժամանակ իմ դիմաց նստած ունկընդիրներից մեկը կարմրեց։ Նա դժվարանում էր ուղիղ նայել ինձ, գիտեր, որ անպայման պետք է իր անունը տամ, քանի որ նրա վակուում ապարատը հազիվ փրկվեց փչացումից՝ չափից ավելի գոլորշի տալու պատճառով։ Ես, իհարկե, չմատնանշեցի նրա անունը, զգալով, որ նա հասկացավ միտքս։

Մեր ցեխի ցավոտ հարցերից մեկը կաուս-



տիկ սոդայի գերածախսն է։ Այդ նկատի ունենալով՝ խոսեցի նյութերի խնայողության մասին և ունկնդիրների ուշադրությունը սրեցի նաև այդ հարցի վրա։ Կաուստիկ սոդայի գերածախս մեծ մասամբ լինում է հունդի անորակության պատճառով։ Սակայն կան նաև տեղական պատճառներ, որոնք կախված են հենց գործարանից։ Օրինակ, վաղուց է հասունացել այն հարցը, որպեսզի յուղի զտումը կատարվի էմուլսիոն եղանակով, ըստ որի, սոդայի և յուղի միացումը տեղի կունենա ավելի արագ, և զգալի չափով կպակասեն սոդայի կորուստները։ Այս հարցի մասին խոսվեց նաև վերջերս տեղի ունեցած մեր գործարանի պարտկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովում, որտեղ կոմունիստները պահանջեցին հարց բարձրացնել կոմբինատի ղեկավարության առջև, գործարանի կապիտալ վերանորոգման ժամանակ տեղադրել նաև անհրաժեշտ մեքենաներ՝ այս տարի յուղզտման էմուլսիոն մեթոդը կիրառելու համար։ Այնուհետև բազմաթիվ օրինակներ բերեցի այն մասին, թե ինչպես բանվորները մեքենաների ծորակները բաց են թողնում, և երկար ժամանակ անտեղի թափվում է սոդան։

*Զրույցի ժամանակ, խոսելով նյութերի շռայլման գերածախսի մասին, պարսավանքի ենթարկեցի խնայողության գործում թերացող մի քանի բանվորների և վարպետների. չմոռացա խոսել նաև մի այնպիսի ցավոտ հարցի մասին, ինչպիսին ջրի շռայլումն է։ Գործարանում աջ ու ձախ շռայլվում էր ջուրը, մի շարք ցեխերում և աշխատամասերում բանվորների անփութության պատճառով ժամերով և օրերով բաց էին մնում ջրի ծորակները և անտեղի հսկայական քանակությամբ ջուր էր հոսում։ Հենց գործարանից և մեր ցեխերից բերելով մի քանի օրինակներ, ցույց տվեցի, թե ինչպես ջրի շռայլման պատճառով լուրջ վնաս է հասնում գործարանին, և մեր քաղաքի շատ թաղամասեր զգում են ջրի պակասություն։*

*— Այ, օրինակ, մեր շենքում ջուրը 5-րդ հարկը չի բարձրանում,— ասաց բանվորներից մեկը։*

*—Չի բարձրանում, քանի որ հենց քո կողքին, որտեղ դու աշխատում ես, ջրի ծորակը բոլորովին չի փակվում,— պատասխանեցի ես։*

*Նա ոչինչ չասաց. դե, պարզ է, լռությունը համաձայնության նշան է։*

*Հաջորդ օրը, երբ մտա ցեխ, իմ ուշա-*



*դրությունը իսկույն գրավեցին ջրի փակ ծորակները։ Մեր ունեցած զրույցը արդյունք էր տվել։*

*Նկատի ունենալով, որ արտադրանքի ինքնարժեքի իջեցումը կախված է նաև արտադրանքի ժամանակին իրացումից, զրույցի ժամանակ անհրաժեշտ ուշադրություն նվիրեցի նաև այդ հարցին։ Իսկ մեզ մոտ, այդ գործում կան լուրջ թերություններ։ Ժամանակին վագոններ չտրամադրելու պատճառով շաբաթներով քուսպը և շելուխան մնում են պահեստում թափված, և տեղիք է տրվում փչացումների ու ապրանքի շրջապտույտի դանդաղեցման, իսկ դա բացասաբար է ազդում ինքնարժեքի իջեցման վրա։*

*Զրույցն ավարտված է, սակայն բանվորները շարունակում են վիճաբանել միմյանց հետ տարբեր հարցերի վերաբերյալ։ Երևում է, որ մեր ունեցած զրույցը հետաքրքրություն է առաջացրել նրանց մեջ։*

*Իսկ ի՞նչն էր հետաքրքրության պատճառը։ Իմ կարծիքով այն, որ ագիտացիոն զրույցի թեման լիովին շաղկապվեց մեր գործարանի և հենց իրենց՝ ունկնդիրների առօրյա աշխատանքի հետ։*

*ԷՎԵԼԻՆԱ ԴԱՆԻԵԼՅԱՆ*
Ձեթ–օճառ կոմբինատի, ձեթի
գործարանի զտման ցեխի ագիտատոր

# ՊԱՅՔԱՐԻ ՈՒ ՀԱՂԹԱՆԱԿԻ ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ

«Պարտիան գոյություն ունի ժողովրդի համար, նրան ծառայելու մեջ է տեսնում իր գործունեության իմաստը»։ ՍՄԿՊ Ծրագրի նախագծում հռչակված այս ոգեշունչ խոսքերը կրկնապատկում ու եռապատկում են սովետական մարդկանց աշխատանքային եռանդը։ Նրանք գիտեն, որ հարազատ պարտիան իր առջև խնդիր է դրել առաջիկայում մեր երկրում ապահովել ամենաբարձր կենսամակարդակ կապիտալիզմի ամեն մի երկրի համեմատությամբ։ Ահա այդ մասին թվեր ու փաստեր։

Առաջիկա 10 տարվա ընթացքում նախատեսվում է արդյունաբերական արտադրանքի ծավալը մեծացնել մոտավորապես երկուս ու կես անգամ և գերազանցել ԱՄՆ-ի արդյունաբերական արտադրության արդի մակարդակը։



Առաջիկա 20 տարում մեր երկրի արդյունաբերական արտադրանքի ծավալը կմեծանա ոչ պակաս քան վեց անգամ։

Աշխատանքի արտադրողականությունը 10 տարում մեր երկրի արդյունաբերության մեջ կբարձրանա ավելի քան երկու անգամ, իսկ 20 տարում՝ չորս-չորս ու կես անգամ։

Արդյունաբերության մեջ առաջիկա տասնամյակում աշխատանքի էլեկտրազինվածությունը կավելանա գրեթե 3 անգամ։

Առաջիկա տասնամյակի վերջին էլեկտրաէներգիայի տարեկան արտադրությունը կհասնի 900—1000 միլիարդ, իսկ երկրորդ տասնամյակի վերջին՝ 2700—3000 միլիարդ կիլովատ ժամի։

Արագ զարգացում կապրի մետաղի արտադրությունը։ 20 տարվա ընթացքում սև մետալուրգիան կհասնի այնպիսի մակարդակի, որ հնարավորություն կտա տարեկան ձուլել մոտ 250 միլիոն տոննա պողպատ։

Ավելի առատություն և ավելի լիություն կլինի մեր երկրում։ Խնդիր է դրվում 10 տարում գյուղատնտեսության արտադրանքի

ընդհանուր ծավալը մեծացնել մոտավորապես երկուս ու կես անգամ, իսկ 20 տարում՝ երեք ու կես անգամ։

Առաջին տասնամյակում Սովետական Միությունը Ամերիկայի Միացյալ Նահանգներից կանցնի բնակչության մեկ շնչին ընկնող հիմնական գյուղատնտեսական մթերքների արտադրությամբ։

Արագ վերելք կստեղծվի հացահատիկի արտադրության գործում։ Քսանամյակի ընթացքում հացահատիկային կուլտուրաների համախառն արտադրությունը կաճը ավելի քան երկու անգամ, իսկ դրանց բերքատվությունը կկրկնապատկվի։

Անասնապահական մթերքների արտադրության ծավալը կմեծանա հետևյալ չափերով. մսինը՝ առաջին տասնամյակում մոտավորապես երեք անգամ, իսկ քսան տարում գրեթե չորս անգամ, կաթինը՝ տասը տարում ավելի քան երկու անգամ, իսկ քսան տարում՝ գրեթե երեք անգամ։

Աշխատանքի արտադրողականությունը գյուղատնտեսության մեջ տասը տարվա ընթացքում կբարձրանա առնվազն երկուս ու



կես անգամ, իսկ քսան տարում՝ հինգ-վեց անգամ։

Ազգային եկամուտը մոտակա տասը տարում մեր երկրում կաճի գրեթե երկուս ու կես անգամ, իսկ 20 տարում՝ մոտավորապես հինգ անգամ։

Առաջիկա տասը տարում բանվորների և ծառայողների ռեալ եկամուտները (հաշվի առնելով հանրային ֆոնդերը), մեկ աշխատողին ընկնող միջին հաշվով, կավելանա գրեթե երկու անգամ, իսկ 20 տարում՝ մոտավորապես երեք, երեք ու կես անգամ։

Ավելի արագ կաճեն կոլտնտեսականների ռեալ եկամուտները։ Մոտակա տասնամյակում, մեկ աշխատողի հաշվով, նրանց եկամուտները կբարձրանան ավելի քան երկու անգամ, իսկ 20 տարում՝ ավելի քան չորս անգամ։

Ամեն տարի մեր երկրում աճում են հանրային ֆոնդերը։ Մինչև 1980 թվականը հանրային ֆոնդերը կկազմեն մեր երկրի աշխատավորների ընդհանուր սպառման մոտավորապես 50 տոկոսը։

Ազգային եկամտի աճման տեմպերով Սովետական Միությունը առաջ է անցել ԱՄՆ-ից։ Անցյալ տարի ՍՍՌՄ ազգային եկամուտը 27 անգամ գերազանցեց 1913 թվականի մակարդակը, իսկ այդ ժամանակամիջոցում ԱՄՆ-ը կարողացավ ազգային եկամուտն ավելացնել միայն 3,5 անգամ։

Ազգային եկամուտը ՍՄԿՊ XX համագումարից հետո ՍՍՌՄ-ում աճել է 56 տոկոսով և 1960 թվականին կազմել 144 միլիարդ ռուբլի, այնինչ ԱՄՆ-ում նույն ժամանակամիջոցում ազգային եկամուտը պակասել է 12 տոկոսով, Անգլիայում՝ 11 տոկոսով։

Ազգային եկամտի աճման հետ միասին աճում են մեր երկրի աշխատավորների եկամուտները։ 1960 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, բանվորների ռեալ եկամուտներն ավելացել են 5,8 անգամ, իսկ գյուղացիներինը՝ 7 անգամ։

Անշեղորեն բարձրանում է սովետական մարդկանց նյութական բարեկեցությունը։ 1956—1960 թվականներին ապրանքաշրջանառությունը (պետական և կոոպերա-



տիվ) աճել է 57 տոկոսով, պարենային մթերքներինը՝ 49 և ոչ պարենային մթերքներինը՝ 65 տոկոսով։

Աշխատավորների պահանջմունքները 1959 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, մսի և ճարպի նկատմամբ, մեկ շնչի հաշվով, աճել է 27 տոկոսով, շաքարինը՝ 37 տոկոսով, կաթինը և կաթնամթերքներինը՝ 40 տոկոսով, ձվինը՝ 44 տոկոսով և այլն։

Աշխատավորները 1959 և 1960 թվականներին կատարված մետաքսե գործվածքեղենի, լուսանկարչական ապարատների, ժամացույցների, հեծանիվների, դեղորայքի և մյուս ապրանքների գների իջեցումից տարեկան շահեցին 1,1 միլիարդ ռուբլի։

Այս տարվա առաջին կիսամյակում, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, չնայած բանվորական օրվա տևողության կրճատմանը, բանվորների և ծառայողների աշխատավարձը մեր երկրում ավելացել է 4 տոկոսով, այդ թվում արդյունաբերության և շինարարության մեջ՝ 5 տոկոսով։

Աշխատավորների եկամուտները 1956—1960 թվականների ընթացքում տարեկան ավելացել են 24,2 միլիարդ ռուբլի, այդ թվում աշխատավարձի բարձրացումից՝ 17,1 միլիարդ ռուբլի, կենսաթոշակների բարձրացումից՝ 4 միլիարդ ռուբլի, փոխառությունների շահումներից՝ 2,2 միլիարդ ռուբլի և այլն։

Աշխատավորների դարավոր երազը հարկերից ազատվելու մասին՝ միայն իրականություն է դառնում մեր երկրում։ Այնինչ, ԱՄՆ-ում և կապիտալիստական մյուս երկրներում անընդհատ ավելանում են աշխատավորների վրա դրվող հարկերը։ ԱՄՆ-ի բյուջեում վերջին 20 տարվա ընթացքում հարկերն ավելացել են 8 անգամ, Անգլիայում՝ 5,5 անգամ։

Ամերիկյան ամեն մի ընտանիքի եկամուտը գանձվող հարկերի պատճառով տարեկան պակասում է 30 տոկոսով, Անգլիայում՝ 22, Ֆրանսիայում՝ 28, Իտալիայում՝ 20 և Արևմտյան Գերմանիայում՝ 30 տոկոսով։

Ավելի շատ բնակարան է կառուցվում մեր երկրում, քան ԱՄՆ-ում, Անգլիայում, Ֆրանսիայում, Գերմանիայի Ֆեդերալ Ռեսպուբլիկայում, Շվեդիայում, Նիդերլանդներում, Բելգիայում և Շվեյցարիայում միասին վերցրած։ Միայն 1960 թվականին ՍՍՌՄ-ում կառուցվել է 2 միլիոն 400 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, բացի այդ, կոլտնտեսականները և գյուղական ինտելիգենցիան կառուցել են 625 հազար բնակելի տուն։ Այնինչ, ԱՄՆ-ում (հաշված նաև Ալյասկան և Հավայան կղզիները) կառուցվել է 1 միլիոն 300 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։

Առաջիկա 10 տարում մեծ աշխատանք կկատարվի աշխատանքային ժամանակի կրճատման ուղղությամբ, կիրագործվի անցում վեցժամյա աշխատանքային օրվա, իսկ ստորերկրյա աշխատանքներում և վնասակար արտադրություններում՝ հինգժամյա աշխատանքային օրվա։

Այսպիսին է մեր սիրասուն Հայրենիքը, որտեղ հարազատ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ կառուցվում է կոմունիստական հասարակարգ, որի դրոշի վրա գրված կլինի. «Յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ պահանջմունքների»։

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ԱՎԱՆԳԱՐԴՆ Է, ԱՄԲՈՂՋ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՐՏԻԱՆ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մեր ռևոլյուցիայի մասին, Երկեր, Հատ. 33, էջ 566—571, Հայպետհրատ, 1952։*

*Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ճառ Կոմունիստական պարտիայի դերի մասին, Երկեր, հատ. 31, էջ 283—288, Հայպետհրատ, 1952։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ժողովուրդների ամուր և անխախտ բարեկամությունը մեր ուժն է, կոմունիզմի գալիք հաղթանակների գրավականը, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի փետրվարի 12-ի համարում։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդի ղեկավար և կազմակերպող ուժն է կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում, Հայպետհրատ, 1959։*

Պարտիան կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում, *Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագիր-նախագիծ, էջ 166—174, Հայպետհրատ, 1961։*



## 2. ԿՈՄՈՒՆԻԶՄԸ ԱՄԲՈՂՋ ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆ ՊԱՅԾԱՌ ԱՊԱԳԱՆ Է

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. ԼԵՆԻՆ— Կոմունիզմ, Երկեր, հատ. 31, էջ 191—194, Հայպետհրատ, 1952։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— ՍՄԿՊ Կենտկոմի հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին, Հայպետհրատ, 1956։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման կոնտրոլ թվերի մասին, զեկուցում ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարում 1959 թվականի հունվարի 27-ին, առաջին բաժին, Հայպետհրատ, 1959։*

Կապիտալիզմից սոցիալիզմին անցնելը մարդկության զարգացման ուղին է։ Կոմունիզմը ամբողջ մարդկության պայծառ ապագան է, *Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագիր-նախագիծ, էջ 7—68 և 76—81, Հայպետհրատ, 1961։*

## 3. ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՆՅՈՒԹԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԲԱԶԱՅԻ ՍՏԵՂԾՈՒՄԸ ՊԱՐՏԻԱՅԻ ԵՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԻՄՆԱԿԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԽՆԴԻՐՆ Է

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. ԼԵՆԻՆ— Սովետական իշխանության հերթական խնդիրները, Երկեր, հատոր 27, էջ 297—333, Հայպետհրատ, 1951։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ — ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին, զեկուցում ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարում, 1959 թվականի հունվարի 27-ին, Հայպետհրատ, 1959։

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ — Հանուն երկրի արտադրողական ուժերի հետագա վերելքի, հանուն ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի տեխնիկական առաջադիմության, ճառ, ՍՄԿՊ Կենտկոմի Պլենումում, 1959 թվականի հունիսի 29-ին, Հայպետհրատ, 1959։

Պարտիայի խնդիրները տնտեսական շինարարության, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման ու զարգացման բնագավառում, Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագիրը-նախագիծ, էջ 76—121, Հայպետհրատ, 1961։

## 4. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԿԱՊԱՀՈՎԻ ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ԱՄԵՆ ՄԻ ԵՐԿՐԻ ՀԱՄԵՄԱՏՈՒԹՅԱՄԲ ԱՄԵՆԱԲԱՐՁՐ ԿԵՆՍԱՄԱԿԱՐԴԱԿԸ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ — ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին, զեկուցում ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարում, 1959 թվականի հունվարի 27-ին, Հայպետհրատ, 1959։

Ցածր վարձատրվող բանվորների և ծառայողների



աշխատավարձը բարձրացնելու մասին։ ՍՍՌՄ Մինիստրների Սովետի, ՍՄԿՊ Կենտկոմի և Արհեստակցական Միությունների Համամիութենական Կենտրոնական Խորհրդի 1956 թվականի սեպտեմբերի 8-ի որոշումը, Հայպետհրատ, 1958։

Մանր արդյունաբերության մի շարք ճյուղերի բանվորներին ու ծառայողներին յոթ և վեց ժամյա աշխատանքային օրվա փոխադրելու և աշխատավարձը կարգավորելու մասին։ ՍՄԿՊ Կենտկոմում և ՍՍՌՄ Մինիստրների Սովետում, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի ապրիլի 23-ին։

Բնակարանային շինարարության զարգացման մասին ՍՍՌՄ-ում։ ՍՄԿՊ Կենտկոմում և ՍՍՌՄ Մինիստրների Սովետում, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի օգոստոսի 1-ին։

Պարտիայի խնդիրները ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման բնագավառում, Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագիրը-նախագիծ, էջ 110—121, Հայպետհրատ, 1961։

## 5. ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐ ՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ ՕԺՏՎԱԾ ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ — Երիտասարդության Միությունների խնդիրները, Երկեր, հատ. 31, էջ 343—366, Հայպետհրատ, 1952։

*Վ. Ի. ԼԵՆԻՆ— Պրոլետարական կուլտուրայի մասին, Երկեր, հատ. 31, էջ 388—390, Հայպետհրատ, 1952։*

*Կյանքի հետ դպրոցի կապն ամրապնդելու և երկրում ժողովրդական կրթության սիստեմի հետագա զարգացման մասին, ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի թեզիսները, Հայպետհրատ, 1958։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կանոնադրությունը—*նախագիծ, Հայպետհրատ, 1961։*

*Պարտիայի ներքին կյանքի կոդեքսը, «Ս. Հ.»-ի 1961 թվականի օգոստոսի 6-ի առաջնորդողը։*

## 6. ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԸ ՎԵՐԱՑՆԵԼԸ, ԵՐԿՐԱԳՆԴԻ ՎՐԱ ՀԱՎԻՏԵՆԱԿԱՆ ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆ ՀԱՍՏԱՏԵԼԸ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՄԻՍԻԱՆ Է

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—Հանուն կայուն խաղաղության և խաղաղ գոյակցության, Հայպետհրատ, 1958։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—Բոլոր երկրներում ժողովուրդների կամքն է ապահովել ամբողջ աշխարհի խաղաղությունը, Հայպետհրատ, 1959։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ելույթ ռադիոյով և հեռուստատեսությամբ 1961 թվականի օգոստոսի 7-ին, տպագրված «Ս. Հ-»-ի 1961 թվականի օգոստոսի 8-ի համարում։*

Սովետական Կառավարության Հայտարարությունը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի օգոստոսի 31-ի համարում։*





Խաղաղ գոյակցությունը և ընդհանուր խաղաղության համար մղվող պայքարը, *Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագիրը—նախագիծ, էջ 68—76, Հայպետհրատ, 1961։*

## 7. ՍՄԿՊ XXII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԴԻՄԱՎՈՐԵՆՔ ՍՏԱՆՁՆԱԾ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԲԱՐՁՐ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐՈՎ ԿԱՏԱՐԱԾ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Հաջողությամբ կատարենք ՍՄԿՊ XXII համագումարի պատվին ստանձնած սոցիալիստական պարտավորությունները, ինֆորմացիա ՀԿՊ Կենտկոմի 9-րդ պլենումի մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հուլիսի 23-ի համարում։*

*ՅԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ— Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների մարտական խնդիրները, զեկուցում ռեսպուբլիկայի պարտիական ակտիվի ժողովում, տպագրված «Ս. Հ».-ի 1961 թվականի օգոստոսի 10-ի համարում։*

*Ռեսպուբլիկայի աշխատավորների արտադրական խանդավառությունը, նյութեր ՍՄԿՊ համագումարի պատվին ստանձնած պարտավորությունների կատարման մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի օգոստոս և սեպտեմբեր ամիսների համարներում։*

---

*Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ*

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

ՀՐ. ՇԱՔԱՐՅԱՆ—Կոմունիստական գիտակցականության ձևավորման շուրջը, 104 էջ, գինը 10 կոպ.։

Մ. ԱՐՄԵՆ—Հեղնար աղբյուր, 123 էջ, գինը 36 կոպ.

ԱՐՏ. ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ—Մարգար Գալֆայան, 45 էջ, գինը 2 կոպ.

Ֆ. ՄՈԼՆԱՐ,—Պալա փողոցի տղաները, 197 էջ, գինը 37 կոպ.

Վ. ՎԼԱԴԻՄԻՐՈՎ—Ավտոտրանսպորտի երթևեկության կանոնները, 280 էջ, գինը 72 կոպ.

Հ. ԽԱԼՓԱԽՉՅԱՆ—Հայաստանի արտադրական կառուցվածքները, 90 էջ, գինը 42 կոպեկ։

Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 18 1961 г.

ՎՖ 10363 Պատվեր 438 Տպաքանակ 8232

Հանձնված է արտադրության 31/VIII 1961 թ.։
Ստորագրված է տպագրության 9/IX 1961 թ.։

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 8 կոպ.